Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 3 ՀՈՒՆՎԱՐ 1956

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։




---

# ԻՆՉՊԵՍ ՄԱՍՍԱՅԱԿԱՆԱՑՆԵԼ ՊԱՐՏԻԱՅԻ 20-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԴԻՐԵԿՏԻՎՆԵՐԻ ՆԱԽԱԳԻԾԸ

*Ագիտատո՛ր, մեծ և պատվավոր խնդիր է դրված քո առաջ՝ աշխատավորներին լայնորեն պարզաբանել Հարազատ Կոմունիստական պարտիայի XX համագումարի Դիրեկտիվների նախագիծը՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ։ Քաղաքական միթխարի կարևորություն ունեցող այդ փաստաթուղթը հայրենասիրական բուռն խանդավառությամբ ընդունեցին մեր մեծ երկրի բոլոր ժողովուրդները։ Այն չտեսնված աշխատանքային ակտիվություն է առաջ բերել արդյունաբերության, գյուղատնտեսության և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում աշխատողների լայն շրջանում։ Օգտագործելով քաղաքական ագիտացիայի հարուստ և բազմազան ձևերն ու մեթոդները, ագիտատորը այս օրերին ունկնդիրներին պետք է հան-*





գամանորեն ցույց տա, թե ինչպես պարտիան անդադրում հոգ է տանում Սովետական Հայրենիքի ծաղկման ու բարգավաճման համար, ժողովրդի բարօրության, նրա նյութական բարեկեցության բարելավման համար։

Վեցերորդ հնգամյակում է՛լ ավելի հզոր զարգացման կհասնեն Սովետական երկրի արտադրողական ուժերը։ Այդ հնգամյակը կլինի ժողովրդական տնտեսության՝ արտադրության տեխնիկական ավելի բարձր մակարդակի անցնելու հնգամյակ, որակական բոլոր ցուցանիշների կտրուկ բարձրացման և տնտեսական ղեկավարության բարելավման հնգամյակ։

Որպեսզի ՍՄԿԿ XX համագումարի Դիրեկտիվների նախագծի մեկնաբանումը բանվորների, կոլտնտեսականների և բոլոր ունկնդիրների համար լինի հետաքրքիր և բովանդակալից, խիստ անհրաժեշտ է, որ ագիտատորները տեղերում զրույցներ կազմակերպեն ըստ ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերի։ Այսպես, օրինակ, ունկնդիրների համար առանձին զրույց պետք է կազմակերպել նոր հնգամյակում ծանր ինդուստրիայի նոր և հզոր վերելքի մասին։ Ցույց տալ, որ ծանր ինդուստրիան սոցիա-



լիստական էկոնոմիկայի հիմքն է, որ Դիրեկտիվների նախագծում վառ կերպով դրսևորվում է ծանր ինդուստրիայի առավել զարգացման՝ մեր պարտիայի լենինյան գլխավոր գիծը։ Պարզաբանել, որ ծանր ինդուստրիայի առավել զարգացումն ամրապնդում է Սովետական Միության տնտեսական հզորությունը և նրա պաշտպանունակությունը։ Այնուհետև ագիտատորը ունկնդիրներին պետք է պարզ և ճշգրիտ պատկերացում տա, թե նոր հնգամյակում ինչպե՞ս է զարգանալու ծանր ինդուստրիան մեր ռեսպուբլիկայում։ Զրույցի ընթացքում հարկավոր է հարուստ թվական և փաստական տվյալներ բերել ծանր արդյունաբերության արտադրանքի աճի և որակական ցուցանիշների մասին, օգտագործելով համապատասխան դիագրամաներ, պլակատներ, ալբոմներ, ֆոտո-նկարներ և ցուցադրական ագիտացիայի այլ նյութեր։

Ունկնդիրների հետ առանձին զրույց պետք է ունենալ արտադրական պրոցեսների մեքենայացման և ավտոմատացման վերաբերյալ։ Լավ կլինի, որ զրույցի ընթացքում այդ հարցը սերտորեն կապվի արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների լայն արմատավորման հետ։ Ագի-

տատորը կարող է ունկնդիրներին ծանոթացնել նաև նորարարական և ռացիոնալիզատորական այն առաջարկությունների հետ, որ արմատավորվել է արտադրության մեջ հենց իրենց ձեռնարկությունում։ Շատ գրավիչ կլինի ագիտացիոն այն զրույցը, որը հետաքրքիր տեղեկություններ կտա, թե ինչպես նոր հնգամյակում խաղաղ նպատակներով ընդլայնվելու է ատոմային էներգիայի կիրառումը ժողովրդական տնտեսության մեջ։

Հողագործության և անասնաբուծության շեշտակի վերելքը ապահովելու նպատակով ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման Դիրեկտիվների նախագծում վիթխարի խնդիրներ են դրված գյուղատնտեսության ֆրոնտի աշխատողների առջև։ Այդ կապակցությամբ կոլտնտեսություններում, սովխոզներում, մեքենա-տրակտորային կայաններում, ինչպես նաև ձեռնարկություններում և հիմնարկություններում ագիտատորներն ունկնդիրների հետ զրույցներ պետք է ունենան՝ մեր երկրի գյուղատնտեսության վերելքը նոր հնգամյակում թեմայով։ Յուրաքանչյուր ագիտատոր պետք է ձգտի, որ իր զրույցն ունկնդիրների հետ գյուղատնտեսության մասին լինի ոչ միայն հետաքրքիր, այլև նպատակասլաց։ Ագիտա-



տորի այդ ձգտումը հաջողությամբ կպսակվի միայն այն ժամանակ, երբ նա խելացի ու մտածված կերպով նախապատրաստի և անցկացնի զրույցը։ Անհրաժեշտ է զրույցի ընթացքում մանրամասնորեն ունկնդիրներին պարզաբանել գյուղատնտեսության զարգացման վեցերորդ հնգամյա պլանի գլխավոր խնդիրները։ Կոնկրետ փաստերով ցույց տալ, որ սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացման նպատակով առաջիկայում գյուղատնտեսական ժամանակակից մեքենաներով ու գործիքներով է՛լ ավելի շատ կհագեցվեն մեր մեքենա-տրակտորային կայաններն ու սովխոզները, որ սիստեմատիկաբար բարձրացվելու է գյուղատնտեսական արտադրության կուլտուրան՝ ագրոտեխնիկական գիտության և առաջավոր փորձի նվաճումները լայնորեն օգտագործելու հիման վրա։ Հարկավոր է կոլտնտեսականներին և մեխանիզատորներին հանգամանորեն պարզաբանել այն նորը, որ վեցերորդ հնգամյակում կիրառվելու է գյուղատնտեսության զարգացման գործում։ Օրինակ, գյուղատնտեսության առանձին ճյուղերի տնտեսական տեսակետից նպատակահարմար տեղաբաշխումը, հողագործության ու

անասնաբուծության մասնագիտացումն ըստ երկրի շրջանների և այլն:

Աշխատավորների լայն շրջանում բովանդակալից ու նպատակասլաց ագիտացիոն զրույցներ պետք է կազմակերպել նաև ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման վերաբերյալ պարտիայի XX համագումարի Դիրեկտիվների նախագծում եղած մյուս հարցերի մասին, օրինակ, տրանսպորտի և կապի բոլոր տեսակների հետագա զարգացման, շինարարական աշխատանքների, աշխատանքի արտադրողականության բարձրացման, ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման և բազմաթիվ այլ հարցերի վերաբերյալ:

Դիրեկտիվների նախագիծը բոլոր ունկնդիրների սեփականությունը դարձնելու լավագույն միջոցներից մեկը խմբակային զրույցն է: Գործնականում ագիտացիոն աշխատանքի այդ ձևը հիանալի արդյունք է տվել: Քաղաքական և տնտեսական կամպանիաների ընթացքում միշտ էլ բազմաթիվ ագիտատորներ խելացի կերպով օգտվել են ագիտացիայի այդ ձևից, որովհետև այն անմիջական և կենդանի կապ է ստեղծում ունկնդիրների և ագիտատորի միջև:

Այժմ մեր ագիտատորները ագիտացիոն



աշխատանքի ընթացքում պետք է լայնորեն օգտագործեն խմբակային զրույցները և ունկնդիրներին ամենայն մանրամասնությամբ պարզաբանեն, թե պարտիան ինչ խնդիրներ է դնում արդյունաբերության և գյուղատնտեսության ֆրոնտի աշխատողների առջև և ինչ են անելու իրենք այդ խնդիրները պատվով կատարելու համար:

Անհատական զրույցը նույնպես աշխատավորների մեջ քաղաքական-բացատրական աշխատանք կատարելու տարածված և արդյունավետ ձևերից մեկն է և այն պետք է լայնորեն օգտագործել հատկապես տնային տնտեսուհիների և այն անձանց շրջանում, որոնք իրենց աշխատանքի յուրահատուկ բնույթով փոքրաթիվ են, ասենք մեկ կամ մի քանի հոգի:

Դիրեկտիվների նախագիծը ունկնդիրներին հանգամանորեն պարզաբանելու գործում խոշոր նշանակություն ունի ցուցադրական ագիտացիան: Այն պետք է կազմակերպել ամենուրեք՝ ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, սովխոզներում, մեքենա-տրակտորային կայաններում, ինչպես նաև բնակելի շենքերում:

Դիտելով ցուցադրական ագիտացիայի նյութերը, ունկնդիրները պարզ պատկերա-

ցում կունենամ վեցերորդ հնգամյա պլանի հոյակապ խնդիրների մասին։

Ագիտատոր, հիշիր մեծ Լենինի այն իմաստուն խոսքերը, որ պետությունը ուժեղ է մասսաների գիտակցությամբ։ Նա ուժեղ է այն ժամանակ, երբ մասսաներն ամեն ինչ գիտեն, ամեն ինչի մասին կարող են դատել և ամեն ինչի գնում են գիտակցորեն։

Ամենօրյա ագիտացիոն-մասսայական աշխատանքի միջոցով մեր ունկնդիրների սեփականությունը դարձնենք պարտիայի XX համագումարի Դիրեկտիվների նախագիծը ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի մասին։

---



# ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՆՈՐ ԵՎ ՀԶՈՐ ՎԵՐԵԼՔԸ ՎԵՑԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

Սովետական ստեղծագործ ժողովրդի հերոսական և անձնվեր աշխատանքի շնորհիվ ժամկետից շուտ կատարվեց ժողովրդական տնտեսության զարգացման հինգերորդ հընգամյա պլանը, որի շնորհիվ աճեց մեր երկրի տնտեսական հզորությունը, է՛լ ավելի ամրապնդվեց տնտեսության սոցիալիստական սիստեմը, բարձրացավ սովետական ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակը։ Հնգամյակում ՍՍՌՄ արդյունաբերության արտադրանքը ավելացավ 85 տոկոսով, ընդ որում արտադրության միջոցների արտադրությունը աճեց 91 տոկոսով, իսկ մեքենաշինության ու մետաղամշակման արտադրանքի ընդհանուր ծավալը 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, ավելացել է 2,2 անգամ։ 1955 թվականին 3,2 անգամ ավելի շատ արդյունաբերական արտադրանք է արտադրվել, քան 1940 թվա-

կանին։ Գերակատարվել են նաև հնգամյա
պլանի մյուս առաջադրանքները։
Սովետական Միությունը թևակոխում է
ժողովրդական տնտեսության զարգացման
վեցերորդ հնգամյակը՝ ունենալով հզոր ու
լազմակողմանի զարգացած սոցիալիստա-
կան արտադրություն, նյութական մեծ ռե-
սուրսներ և որակյալ կադրեր։ Սովետական
երկիրը այժմ ունի անհրաժեշտ բոլոր պայ-
մանները, որպեսզի պատմական կարճ ժա-
մանակամիջոցում լուծի ՍՍՌՄ հիմնական
տնտեսական խնդիրը՝ բնակչության մեկ
շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ
հասնել և անցնել կապիտալիստական առա-
վել զարգացած երկրներից։
Վեցերորդ հնգամյա պլանը հոյակապ
խնդիրներ է դնում սովետական ժողովրդի
առաջ՝ սոցիալիստական կարգի նվաճումնե-
րի ամրապնդման ու ընդլայնման համար
մղվող պայքարում։
Նոր հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ
20-րդ համագումարի Դիրեկտիվների նա-
խագծում ասված է. «ՍՍՌՄ ժողովրդական
տնտեսության զարգացման վեցերորդ հնգամ-
յա պլանի գլխավոր խնդիրներն են՝ ծանր
արդյունաբերության առավել զարգացման,
տեխնիկական անընդհատ պրոգրեսի և աշ-



խատանքի արտադրողականության բարձ-
րացման բազայի վրա ապահովել ժողովրդա-
կան տնտեսության բոլոր ճյուղերի հետագա
հզոր աճ, իրականացնել գյուղատնտեսական
արտադրության շեշտակի վերելք և այդ հի-
մսան վրա հասնել սովետական ժողովրդի
նյութական բարեկեցության ու կուլտուրա-
կան մակարդակի նշանակալի բարձրացման»։
Վեցերորդ հնգամյա պլանը նախատեսում է
Սովետական Միության ժողովրդական տըն-
տեսության բոլոր ճյուղերի հիմք հանդիսա-
ցող ծանր ինդուստրիայի նոր, հզոր վերելք։
Հնգամյակի ընթացքում արդյունաբերական
արտադրանքի աճը սահմանված է 65 տոկո-
սով, իսկ արտադրության միջոցների ար-
տադրությանը՝ («Ա» խումբ) մոտավորապես
70 տոկոս, սպառման առարկաների ար-
տադրությանը՝ («Բ» խումբ) մոտավորապես
60 տոկոս։

Արդյունաբերության ասպարեզում վեցե-
րորդ հնգամյա պլանը, որպես առաջնահերթ
խնդիրներ սահմանում է սև ու գունավոր
մետալուրգիայի, նավթի, ածխի, քիմիական
արդյունաբերության, էլեկտրակայանների շի-
նարարության արագ աճ։
Նոր հնգամյակի վերջին տարվա՝ 1960
թվականի համար արդյունաբերական ար-

տադրանքի կարևորագույն տեսակների ար-
տադրության ծավալը սահմանված է հետևյալ
չափերով՝ չուգուն՝ 53 միլիոն տոննա, պող-
պատ՝ 68,3 միլիոն տոննա, գլանվածք՝ 52,7
միլիոն տոննա, ածուխ՝ 593 միլիոն տոննա,
նավթ՝ 135 միլիոն տոննա, էլեկտրաէներգիա՝
320 միլիարդ կիլովատ ժամ: Այսպիսով 1955
թվականի համեմատությամբ, 1960 թվակա-
նին չուգունի, պողպատի, ածխի արտադրու-
թյան ծավալը կաճի ավելի քան 1,5 անգամ,
իսկ նավթինն ու էլեկտրաէներգիայինը՝ գրե-
թե 2 անգամ:

Ծանր ինդուստրիայի անընդհատ և հզոր վերելքը պատկերացնելու համար բավական է հիշել, որ առաջին հնգամյակի սկզբին ՍՍՌՄ-ում արտադրվում էր չուգուն՝ 3,3 միլիոն տոննա, պողպատ՝ 4,2 միլիոն տոննա, ածուխ՝ 35,2 միլիոն տոննա, նավթ՝ 11,7 միլիոն տոննա, էլեկտրաէներգիա՝ 5 միլիարդ կիլովատ ժամ:

Վեցերորդ հնգամյակում արդյունաբերության մեջ էլեկտրաէներգիայի հետագա արմատավորման հետ միասին իրականացվելու է տրանսպորտի ու գյուղատնտեսության ավելի լայն էլեկտրիֆիկացում, ինչպես նաև բարելավվելու է էլեկտրաէներգիայի մատակարարումը քաղաքներին: Ավարտվելու է



Կույբիշևի և Ստալինգրադի հիդրոէլեկտրակայանների շինարարությունը, նրանց լրիվ կարողությամբ և Վոտկինսկի հիդրոէլեկտրակայանի շինարարությունը՝ Կամայի վրա: Կառուցվելու և գործարկվելու են Կրեմենչուգի, Դնեպրոձերժինսկիի, Իրկուտսկի և Նովոսիբիրսկի հիդրոէլեկտրակայանները: Սկսվելու են ստորին Կամայի, Չեբոկսարիի, Կրասնոյարսկիի և Կամենսկի հիդրոէլեկտրակայանների շինարարությունները: Գործարկվելու է Բրատսկի հիդրոէլեկտրակայանի առաջին հերթը, որի նախագծային լրիվ կարողությունը կկազմի 3 միլիոն 200 հազար կիլովատ: Հնգամյակի ընթացքում էլեկտրաէներգիայի արտադրությունը պետք է ավելանա 88 տոկոսով, այդ թվում հիդրոէլեկտրաէներգիայինը՝ ավելի քան 2,5 անգամ: Վեցերորդ հնգամյակում արագացված տեմպերով զարգանալու է քիմիական արդյունաբերությունը և առանձնապես քիմիական այն արտադրանքների արտադրությունը, որոնք անհրաժեշտ են ժողովրդական տնտեսության զանազան ճյուղերի տեխնիկական պրոգրեսի ապահովման համար:

Արտադրության անշեղ վերելքը՝ բարձրագույն տեխնիկայի բազայի վրա, առաջին հերթին կապված է մեքենաշինության զար-

գացման հետ։ Մեքենաշինության ասպարեզում նախատեսվում է սարքավորման ու մեքենաների, հաստոցների, մամլակների, ապարատների ու գործիքների նոր, բարձր արտադրողական տեսակների հետագա յուրացումն ու լայն զարգացումը։ Հնգամյակում մեքենաշինության և մետաղամշակման արտադրանքը ավելանալու է 80 տոկոսով։ Նախատեսվում է 1960 թվականին արտադրել 280 հազար տոննա մետալուրգիական սարքավորում, 208 հազար տոննա քիմիական սարքավորում, 200 հազար մետաղահատ հաստոց, 650 հազար ավտոմեքենա, 322 հազար տրակտոր, 140 հազար հացահատիկային կոմբայններ, ինչպես նաև բազմաթիվ այլ մեքենաներ ու սարքավորումներ։

Զգալիորեն ընդլայնվելու է ատոմային էներգիայի կիրառումը խաղաղ նպատակներով։ 1956—1960 թվականների ընթացքում կառուցվելու են 2—2,5 միլիոն կիլովատ ընդհանուր կարողությամբ ատոմային էլեկտրակայաններ։ Աշխատանքներ են ծավալվելու տրանսպորտային նպատակների համար ատոմային ուժային հարմարանքներ ստեղծելու համար։ Կառուցվելու է ատոմային շարժիչ ունեցող սառցահատ։ Ամեն կերպ զարգանալու են արդյունաբերության, գյու-



ղատնտեսության, բժշկության մեջ ռադիոակտիվ ճառագայթների հետագա օգտագործման աշխատանքները։

Հնգամյակի տարիներին մեծ մասշտաբներով շարունակվելու է նոր գործարանների, ֆաբրիկաների, երկաթուղիների, ածխահանքերի շինարարությունը։ Պետական կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալը կկազմի 990 միլիարդ ռուբլի, կամ 67 տոկոսով ավելի, քան նախորդ հնգամյակում։ Բայց արդյունաբերական արտադրանքի թողարկումը պետք է աճի ոչ միայն նոր կառուցվող ձեռնարկությունների հաշվին, այլ նաև հին ձեռնարկություններում աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, եղած արտադրական կարողությունները ավելի լավ օգտագործելու և բազմաթիվ այլ միջոցառումներով։ Դրա հաշվին ստացվելու է պողպատի արտադրության նախատեսված աճի առնվազն 47 տոկոսը, չուգունի 35 տոկոսը, սև մետաղների և գլանվածքի 40 տոկոսը, ածխի 35 տոկոսը և այլն։

Արտադրության աճի նախատեսված մակարդակին հասնելու համար անհրաժեշտ է բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։ Հնգամյակի ընթացքում աշխատանքի արտադրողականությունը պետք է

աճի արդյունաբերության մեջ 50 տոկոսով, իսկ շինարարության մեջ՝ 52 տոկոսով։ Աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման, արտադրանքի մեկ միավորի վրա հումքի, նյութերի, վառելանյութի և էլեկտրաէներգիայի ծախսումների իջեցման, վարչա-կառավարչական և մյուս վերադիր ծախսերի զգալի կրճատման հիման վրա հնգամյակի ընթացքում արդյունաբերության արտադրանքի ինքնարժեքը իջեցվելու է 17 տոկոսով։ Տեխնիկական հետագա պրոգրեսի ապահովման, աշխատանքի արտադրողականության բարձրացման և աշխատանքի պայմանների հեշտացման նպատակով դիրեկտիվների նախագիծը սահմանում է՝ հնգամյակի ընթացքում խիստ ավելացնել աշխատանքի մեքենայացման տեմպերը և արդյունաբերության մեջ լայն մասշտաբներով արմատավորել արտադրական պրոցեսների ավտոմատացումը, մեծ չափերով իրականացնել հիմնական և օժանդակ աշխատանքների կոմպլեքսային մեքենայացումը։

Առանձին ագրեգատների ու օպերացիաների ավտոմատացումից պետք է անցում կատարվի ցեխերի, տեխնոլոգիական պրոցեսների և ամբողջ ավտոմատացված ձեռնարկությունների ստեղծմանը։



Հասարակական արտադրության զարգացման ձեռք բերված մակարդակը Սովետական պետությանը հնարավորություն է տալիս վեցերորդ հնգամյակում արագ տեմպերով զարգացնել ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը։ 1960 թվականին արտադրվելու է 7 միլիարդ 270 միլիոն մետր բամբակե գործվածքներ, 363 միլիոն մետր բրդե գործվածքներ, 556 միլիոն մետր վուշե գործվածքներ, 455 միլիոն զույգ կոշկեղեն, ռադիո-ընդունիչներ և տելեվիզորներ 10 միլիոն 200 հազար հատ, տնային սառցարաններ՝ 635 հազար հատ, լվացքի մեքենաներ՝ 528 հազար հատ, կարի տնային մեքենաներ 3 միլիոն 780 հազար հատ, 14 միլիարդ 600 միլիոն ռուբլու կահույք և այլն։ Վեցերորդ հնգամյակում ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը ավելանում է մոտավորապես 60 տոկոսով։ Այդ ամենը հնարավորություն կտա զգալիորեն բարձրացնելու աշխատավորության նյութական բարեկեցությունը և կուլտուրական մակարդակը։

Վեցերորդ հնգամյակի Դիրեկտիվները նոր և հոյակապ խնդիրներ են առաջադրում ինչպես մյուս եղբայրական ռեսպուբլիկաների, այնպես էլ Սովետական Հայաստանի ժողո-

վըրդական տնտեսության, գիտության և կուլտուրայի զարգացման համար։

Նոր հնգամյակի դիրեկտիվների նախագծում նախատեսվում է ռեսպուբլիկայի ամբողջ արտադրության համախառն արտադրանքը ավելացնել 1,7 անգամ, ընդ որում ռեսպուբլիկական արդյունաբերության համախառն արտադրանքը 1,6 անգամ։ Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման հիմնական պայմաններից մեկը էներգետիկան է։ Էլեկտրաէներգիայի արտադրությունը հնգամյակի ընթացքում ավելանալու է 1,3 անգամ։ Այդ տարիներին ավարտվելու է Սևան—Հրազդան կասկադի բոլոր մնացած հիդրոէլեկտրակայանների՝ Արզնիի, Աթարբեկյանի, Երևանի, Նորագավթի և Արգավանդի հիդրոէլեկտրակայանների շինարարությունը։ Նախատեսվում է հնգամյակում սկսել Որոտանի կասկադի և առաջին հերթին Տաթևի հիդրոէլեկտրակայանի շինարարությունը։ Միաժամանակ ուսումնասիրվելու են Դեբեդ և Արփա գետերի ջրաէներգետիկ ռեսուրսները։ Բարձր տեմպերով զարգանալու է ռեսպուբլիկայի գունավոր մետալուրգիան։ Ծանր ինդուստրիայի այդ կարևոր ճյուղի արտադրանքը, վեցերորդ հնգամյակում աճելու է ավելի քան երեք անգամ։



Հնգամյակի ընթացքում զգալիորեն ավելանալու է քիմիական արդյունաբերության արտադրանքը։ Սինթետիկ կաուչուկի արտադրության ավելացման հետ մեկտեղ նախատեսվում է կազմակերպել ռետինե-տեխնիկական առարկաների արտադրություն։ Ընդարձակվելու և վերակառուցվելու է պոլիվինիլացետատ գործարանը, որը թողարկելու է մի շարք արժեքավոր քիմիական նյութեր։ Մեծ չափերով ընդլայնվելու է ծծմբաթթվի, սուպերֆոսֆատի և պղնձարջասպի արտադրությունը Ալավերդու քիմիական գործարանում։ Մեծ աշխատանքներ են տարվելու ռեսպուբլիկայի քար աղի հսկայական պաշարների օգտագործման ուղղությամբ։ Քիմիական արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը վեցերորդ հնգամյակում ավելանալու է ավելի քան երկու անգամ։ Նոր հնգամյակում բուռն թափով զարգանալու է մեքենաշինությունը, հաստոցաշինությունը, գործիքաշինությունը և էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը, որի ընդհանուր արտադրանքն ավելանալու է 3—4 անգամ։ Նախատեսվում է զգալիորեն ընդարձակել և վերակառուցել Հայէլեկտրագործարանը, որի արտադրանքի թողարկումն ավելանալու է մոտ 3 անգամ, Ձերժինսկու անվան հաստո-

ցաշինական գործարանը, Լենինականի հեծանիվի գործարանը, Երևանի կաբելի և էլեկտրատեխնիկական գործարանները։ Բացի դրանցից արդեն սկսվել են Երևանի ժամացույցի գործարանի ընդարձակման աշխատանքները, որի արտադրանքն ավելանալու է 2—3 անգամ, էլեկտրաճշգրիտ գործիքների գործարանի, էլեկտրական լամպերի գործարանի, ինչպես նաև ավտոմասերի գործարանի ընդարձակման աշխատանքները։ Նոր հնգամյակում ստեղծվելու են մեքենաշինական մի շարք խոշոր ձեռնարկություններ Երևանում, Լենինականում, Կիրովականում, Լուսավանում և այլ տեղերում։

Նոր հնգամյակում ծանր արդյունաբերության հետ միաժամանակ արագ կերպով զարգանալու է թեթև, տեքստիլ, սննդի, մսեղենի և կաթնեղենի արդյունաբերությունը։ Հատուկ ուշադրություն է դարձվելու տեղական արդյունաբերության և արհեստագործական կոոպերացիայի կողմից լայն սպառման ապրանքների արտադրության ընդլայնմանը, մասնավորապես նախատեսվում է զգալիորեն ընդլայնել կահույքի, մահճակալների, տնային գործածության առարկաների և գալանտերեայի արտադրությունը։

Նոր հնգամյակում կառուցվելու են հացի,



կոնյակի և գինու գործարաններ, ապակու, պահածոների, կաթի, յուղի ու պանրի և մի շարք այլ գործարաններ։ Կիրովականում կառուցվելու է արհեստական մետաքսի արտադրության գործարան, որը մեծ հեռանկարներ կբացի ռեսպուբլիկայի տեքստիլ և տրիկոտաժ արդյունաբերության հետագա զարգացման համար։ Ընդարձակվելու են Լենինականի, Գորիսի, Շահումյանի, Ստեփանավանի տրիկոտաժի և մետաքսի գործարանները։ Դիլիջանում կառուցվելու է գալանտերեայի ֆաբրիկա, Սևանում՝ գորգագործական ֆաբրիկա, Ախտայում՝ ամանեղենի ու հախճապակու գործարան և այլն։

Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները պատվով կկատարեն հարազատ Կոմունիստական պարտիայի կողմից առաջադրվող խնդիրները։

---

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ ՎԵՑԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ պարտիայի XX համագումարի՝ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի մշակած Դիրեկտիվների նախագծում նշված է, որ հացահատիկի և անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու ուղղությամբ պարտիայի և կառավարության ընդունած խոշոր միջոցառումների իրականացման շնորհիվ պայմաններ են ստեղծվել սոցիալիստական գյուղատնտեսության շեշտակի վերելքի համար։ Խամ ու խոպան հողերի յուրացման շնորհիվ հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունները 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, ավելացել են գրեթե 24 միլիոն հեկտարով։ Աճել են գյուղատնտեսական հիմնական կուլտուրաների համախառն բերքը և անասնաբուծական մթերքների արտադրությունը, 50 տոկոսով



բարձրացել են կոլտնտեսականների ռեալ եկամուտները։

Դրա հետ միասին կան նաև էական թերություններ։ Հնգամյա պլանի առաջադրանքը գյուղատնտեսական արտադրանքի արտադրության գծով թերակատարված է, որը դանդաղեցրել է թեթև ու սննդի արդյունաբերության ճյուղերի զարգացումը, ժողովրդական սպառման ապրանքների թողարկումը։

Ելնելով պարտիայի ու սովետական ժողովրդի առջև կանգնած գլխավոր խնդիրներից, վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվների նախագծում ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի հետ միասին նոր, հսկայական խնդիրներ են նախատեսված սոցիալիստական գյուղատնտեսության ասպարեզում, նպատակ ունենալով հողագործության և անասնաբուծության շեշտակի վերելքի ապահովումը։ Նախատեսված է 1960 թվականին հացահատիկի համախառն բերքը հասցնել մինչև 180 միլիոն տոննայի (11 միլիարդ փթի), 1960 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, բամբակի հումքի համախառն արտադրանքն ավելացնել 156 տոկոսով, վուշաթելինը՝ 135 տոկոսով, շա-

քարի ճակնդեղինը՝ 154 տոկոսով, կարտոֆիլինը՝ 185 տոկոսով, բանջարեղենինը՝ 218 տոկոսով, մսինը՝ 200 տոկոսով, կաթինը՝ 195 տոկոսով, ձվինը՝ 254 տոկոսով, բրդինը՝ 182 տոկոսով։

Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման առաջադրանքը կատարելու համար պահանջվում է ապահովել գյուղատնտեսության առանձին ճյուղերի տնտեսական տեսակետից նպատակահարմար տեղաբաշխումը և հողագործության ու անասնաբուծության մասնագիտացումը երկրի շրջաններում՝ հաշվի առնելով յուրաքանչյուր շրջանի, իսկ շրջանում՝ յուրաքանչյուր կոլտնտեսության և սովխոզի բնական ու տնտեսական պայմանները, նկատի ունենալով 100 հեկտար հողատարածություններից ստացվող արտադրանքի խիստ ավելացումը՝ աշխատանքի և միջոցների նվազագույն ծախսումով։

Դրա հետ միասին պահանջվում է ամեն կերպ բարելավել գյուղատնտեսական կուլտուրաների մշակման ագրոտեխնիկան, լայնորեն կիրառել միջշարային մշակում պահանջող կուլտուրաների ցանքի քառակուսի և քառակուսի բնային եղանակը, ապահովել շարահերկ կուլտուրաների մշակման ու բեր-



քահավաքի կոմպլեքսային մեքենայացումը, վերացնել սերմնաբուծության ետ մնալը և կազմակերպել գյուղատնտեսական կուլտուրաների առավել բերքատու, բարձր մթերատու սորտերի արագացված արմատավորումը և ներդրումն արտադրության մեջ։ Բարելավել հանքային և տեղական պարարտանյութերի օգտագործումը, գյուղատնտեսության համար ընդլայնել տորֆի արդյունաբերական արդյունահանումը, զգալիորեն ավելացնել բակտերիալ պարարտանյութերի և ապահովել ազոտային հեղուկ պարարտանյութերի արտադրությունը, կազմակերպել կրի արդյունաբերական արտադրությունը՝ գյուղատնտեսության պահանջմունքներն ապահովող չափերով։

Հացահատիկային տնտեսության հետագա վերելքն ապահովելու նպատակով ՍՄԿԴ XX համագումարի դիրեկտիվների նախագծում նախատեսված է 1956 թվականին խամ ու խոպան հողերում ցանքերը հասցնել 30 միլիոն հեկտարի և շարունակել այնպիսի խամ ու խոպան հողերի յուրացումը, որոնք կապիտալ մեծ ներդրումներ չեն պահանջում և ոռոգման միջոցով կարելի է կայուն բերք ստանալ։ Դրա հետ միասին խնդիր է դրվում զգալիորեն բարձրացնելու հա-

ցահատիկային կուլտուրաների բերքատվությունը և առաջիկա տարիներին անցնել հացահատիկի շրջայնացված սորտերի սերմացուով ցանք կատարելուն, որը առավել բերքատու է և արժեքավոր իր որակով։ Խնդիր է դրվում զգալիորեն ընդարձակել եգիպտացորենի, այդ արժեքավոր բերքատու կուլտուրայի ցանքատարածությունը և այն 1960 թվականին հասցնել առնվազն 28 միլիոն հեկտարի, լայն չափով կազմակերպելով եգիպտացորենի հիբրիդային սերմացուի արտադրությունը։

Բերքը հավաքելու ժամանակ հացահատիկի կորուստները կրճատելու նպատակով նախատեսվում է երկրի եվրոպական մասում հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը կատարել ոչ ավելի, քան 10, իսկ Սիբիրի ու Հեռավոր Արևելքի շրջաններում՝ 7—8 աշխատանքային օրում, հատուկ ուշադրություն նվիրելով հացահատիկային կուլտուրաների բերքահավաքի անջատ եղանակի լայն արմատավորմանը։

Դիրեկտիվների նախագծում նախատեսված է ապահովել բամբակի, վուշի, շաքարի ճակնդեղի բերքատվության հետագա բարձրացումը և ցանքատարածությունների ընդլայնումը։ Զգալիորեն ընդլայնել շերամա-



պահությունը և 1960 թվականին թթենու շերամորդի բոժոժի արտադրությունը հասցնել 38 հազար տոննայի։

Մի շարք կոնկրետ միջոցառումներ են նշված կաթնամթերքի և բանջարեղենի նկատմամբ քաղաքի բնակչության աճող պահանջմունքների ապահովման, քաղաքամերձ գոտիների կոլտնտեսություններում և սովխոզներում կարտոֆիլի ու բանջարեղենի վաղահաս սորտերի արտադրությունը ավելացնելու համար։

Նոր հնգամյա պլանի վերաբերյալ Դիրեկտիվների նախագծում առանձնահատուկ տեղ է հատկացված անասնաբուծության զարգացմանը։ Նախատեսվում է մսի արտադրությունն ավելացնել ամենից առաջ խոզաբուծության զարգացման հաշվին, խոզի մսի տեսակարար կշիռը հասցնելով երկրում մսի արտադրության ընդհանուր ծավալի 50 տոկոսին։

Հացահատիկային զարգացած տնտեսություն ունեցող կոլտնտեսություններին խորհուրդ է տրվում ընդլայնել թռչնաբուծական առկա խոշոր ֆերմաները և ստեղծել նորերը, իսկ մեծ քանակությամբ ջրամբարներ ունեցող շրջաններում ավելացնել ջրային թռչունների քանակը։

*խնդիր է դրվում երկրի մի շարք շրջաններում ու ռեսպուբլիկաներում, որոնց թվում նաև մեր ռեսպուբլիկայի շրջաններում ամեն կերպ զարգացնել նրբագեղմ և կիսանրբագեղմ ոչխարաբուծությունը, կոլտնտեսություններում ու սովխոզներում յուրաքանչյուր ոչխարի միջին բրդատվությունը բարձրացնելով 27 տոկոսով։*

*Հայտնի է, որ անասնաբուծության զարգացման կարևոր պայմանը, կերի կայուն բազան է։ Ահա թե ինչու խնդիր է դրվում խոտացանության զարգացման, կոմբինացված կերերի արտադրության ավելացման ու այլ միջոցներով մեծապես ավելացնել կերի արտադրությունը և հասնել այն բանին, որ անասունների և թռչունների բոլոր տեսակները լիովին ապահովված լինեն կերով որ կոլտնտեսությունները կեր առանձնացնեն կոլտնտեսականների տնտեսությունների անհատական օգտագործման անասունների համար, և կոլտնտեսություններում ու սովխոզներում ապահովվի կերի ապահովագրական պաշարների ստեղծումը։*

*Նախատեսվում է վեցերորդ հնգամյակում ոռոգվող հողերի տարածությունը ավելացնել մոտավորապես 2,1 միլիոն հեկտարով, յուրացնել 3,1 միլիոն հեկտար չորացած հո-*



*ղեր, անջրդի շրջաններում արոտավայրերը ջրովի դարձնել մոտավորապես 80 միլիոն հեկտարի վրա, որի համար ծավալել ջրող սիստեմների ու կառուցվածքների շինարարությունը, ինչպես նաև անասնապահական ու բնակելի շենքերի կառուցումը։ Խոշոր միջոցառումներ են ձեռնարկվելու նաև անտառային տնտեսության ընդարձակման ուղղությամբ։*

*Սովխոզների առջև խնդիր է դրվում ապահովել գյուղատնտեսական արտադրանքի արտադրության ավելացումը, այն հաշվով, որպեսզի նրանք օժանդակ տնտեսությունների հետ միասին 1960 թվականին պետությանը հացահատիկի հանձնումը հասցնեն 915 միլիոն փթի, մսինը՝ 1,5 միլիոն տոննայի, ձվինը՝ 2 միլիարդ հատի։*

*Մեծ աշխատանքներ պետք է կատարվեն գյուղատնտեսության մեքենայացման մակարդակի բարձրացման ուղղությամբ։ Նախատեսվում է 1956—1960 թվականներին գյուղատնտեսությանը տալ մոտավորապես 1 միլիոն 650 հազար տրակտոր՝ վերածած 15 ուժանոցի, այդ թվում շարամիջյան մշակության 680 հազար տրակտոր (ֆիզիկական հաշվարկմամբ), 560 հազար հացահատիկային կոմբայն ու հացահատիկային կու-*

տուրաների անջատ բերքահավաքի 180 հազար հնձիչ (վինդրոուեր) և 400 հազար կոմբայնային հավաքիչ, ինչպես նաև եգիպտացորենահավաք և սիլոսահավաք 250 հազար կոմբայն։ Գյուղատնտեսության արտադրության մեջ լայնորեն արմատավորվել են նորագույն կոնստրուկցիաների մեքենաներ, որոնց շնորհիվ կապահովվի հացահատիկային ու տեխնիկական շարահերկ կուլտուրաների մշակման, բերքահավաքի, ինչպես նաև անասնաբուծության աշխատանքների կոմպլեքսային մեքենայացումը։ Դրա հետ միասին նախատեսվում է հնգամյակի ընթացքում տրակտորի ու հացահատիկային կոմբայնի օրական արտադրանքը բարձրացնել առնվազն 30—35 տոկոսով։ Խոշոր աշխատանքներ են կատարվելու նաև գյուղատնտեսական արտադրության մեջ էլեկտրաէներգիայի լայն կիրառումն ապահովելու ուղղությամբ։ Հնգամյակի ընթացքում կրկնապատկվելու է մշտական աղբյուրներից էլեկտրաէներգիա ստացող էլեկտրոֆիկացված կոլտնտեսությունների թիվը և ավարտվելու է սովխոզների ու ՄՏ կայանների էլեկտրիֆիկացումը։

Սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման գործում վճռական ուժը հան-



դիսանում են ՄՏ կայանները։ Դրա համար էլ Դիրեկտիվների նախագծում պահանջվում է բարձրացնել ՄՏ կայանների դերը կոլտնտեսություններում գյուղատնտեսական արտադրության բոլոր ճյուղերի զարգացման և կոլտնտեսությունների կազմակերպման ու տնտեսական հետագա ամրապնդման գործում։ ՄՏ կայանները պետք է պատասխանատու լինեն գյուղատնտեսական մթերքների արտադրության և մթերումների պլանների կատարման համար, դաշտավարության և անասնաբուծության աշխատատար պրոցեսների մեքենայացման համար։ ՄՏ կայաններում պետք է պահպանել խնայողության խստագույն ռեժիմը, տրակտորների աշխատանքների ինքնարժեքը իջեցնել մոտավորապես 16 տոկոսով, կրճատել բնավարձի կարգով ստացվող մթերքների վրա կատարվող պետական ծախսերը և 1956 թվականից ձեռնամուխ լինել ՄՏ կայանների տնտեսական հաշվարկին անցնելուն։

ՍՄԿԿ XX համագումարի Դիրեկտիվների նախագծում պահանջվում է ապահովել կոլտնտեսությունների կազմակերպական-տնտեսական հետագա ամրապնդումը և աշխատանքի արտադրողականության բարձրացումը։ Լայնորեն կիրառել կոլտնտեսա-

կանների ամենամյա ավանսավորումը, որը կարևոր ազդակ կհանդիսանա կոլտնտեսականների ակտիվության և աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում։ Գյուղատնտեսական արտադրանքի զգալի ավելացման և աշխատանքի արտադրողականության բարձրացման հիման վրա վեցերորդ հնգամյակի ընթացքում կոլտնտեսականների դրամական և բնամթերային եկամուտները միջին հաշվով պետք է ավելանան 40 տոկոսով։

Գյուղատնտեսության հետագա զարգացման ուղղությամբ լուրջ խնդիրներ են դրվում նաև գյուղատնտեսական գիտության առաջ, որը պետք է օգնի գյուղատնտեսությունը ճիշտ վարելու, հողամշակության և անասնաբուծության գործը բարելավելու, կոլտնտեսությունների, ՄՏ կայանների ու սովխոզների էկոնոմիկայի հարցերը մշակելուն։

Մեծ Լենինը նշում էր, որ աշխատանքի արտադրողականության բարձրացումը, վերջին հաշվով, ամենագլխավորն է հասարակական նոր կարգի հաղթանակի համար։ Հետևելով լենինյան այդ ցուցումին, ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվների նախագծում պահանջվում է ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում ապահովել աշխա-



տանքի արտադրողականության բարձրացման նոր վերելք՝ որպես արտադրության աճի և ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման առաջադրանքների կատարման վճռական պայման։

Դիրեկտիվների նախագծում ասված է, որ աշխատանքի արտադրողականության բարձրացումը հատկապես կարևոր նշանակություն ունի կոլտնտեսություններում՝ վեցերորդ հնգամյակում գյուղատնտեսական արտադրության զարգացման առաջադրանքների կատարումը ապահովելու համար։ Գյուղատնտեսության հետագա զարգացման ուղղությամբ նախատեսված միջոցառումները հնարավորություն են տալիս կոլտնտեսություններում աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել մոտավորապես երկու անգամ և խիստ ավելացնել հողատարածությունների յուրաքանչյուր 100 հեկտար հողին ընկնող գյուղատնտեսական արտադրանքի ստացումը։ Վեցերորդ հնգամյակի Դիրեկտիվների նախագծում նոր ուժով է դրսևորվում Հարազատ Կոմունիստական պարտիայի հոգատարությունը ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների, այդ թվում նաև հայ ժողովրդի տնտեսական ու կուլտուրական հետագա վերելքի համար։ Միու-

թենական ռեսպուբլիկաների ժողովրդական տնտեսության զարգացման վերաբերյալ դիրեկտիվների նախագծում եղած միջոցառումները մեր պարտիայի լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության վառ արտահայտությունն են։

Դիրեկտիվների նախագծում հոյակապ խնդիրներ են դրվում ինչպես արդյունաբերության, այնպես էլ մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության հետագա զարգացման համար։ Նախատեսվում է 1960 թվականին 1955 թվականի համեմատությամբ, ռեսպուբլիկայում հացահատիկի արտադրությունն ավելացնել մոտավորապես 1,5 անգամ, մսինը՝ 2,1 անգամ, կաթինը՝ 2,2 անգամ, բրդինը՝ 1,8 անգամ, բոժոժինը՝ 1,8 անգամ, բանջարեղենինը՝ 2,4 անգամ, կարտոֆիլինը՝ 2,3 անգամ, ձվինը՝ 2 անգամ։ Պետք է ապահովվի նաև խաղողագործության, այգեգործության և բամբակագործության հետագա զարգացումը։

Նոր հնգամյակի Դիրեկտիվների նախագիծը մեծ խնդիրներ է դնում մեր ռեսպուբլիկայի ոռոգման սիստեմի ընդարձակման ուղղությամբ, որը խոշոր նշանակություն կունենա գյուղատնտեսական արտադրության հետագա զարգացման համար։ Նախատես-



վում է նոր հնգամյակում Հայաստանում 39 հազար հեկտար տարածության վրա կառուցել ոռոգման ցանց և ջրովի դարձնել 150 հազար հեկտար արոտավայր։ Պետք է ավարտվի Թալինի ոռոգման ջրանցքի և Արզնի-Շամիրամ ոռոգման սիստեմի առաջին հերթի շինարարությունը։ Ոռոգվող հողերի ընդարձակման հաշվին նախատեսվում է ռեսպուբլիկայում տնկել 13 հազար հեկտար խաղողի և 11 հազար հեկտար պտղատու այգիներ։

Ամբողջ սովետական ժողովրդի հետ միասին Հայաստանի աշխատավորները խանդավառությամբ դիմավորեցին նոր հնգամյակի Դիրեկտիվների նախագիծը, որը աշխատանքի ու պայքարի հոյակապ ծրագիր է կոմունիզմի կառուցման գործում։

Սովետական հերոս ժողովուրդը, Կոմունիստական պարտիայի իմաստուն ղեկավարությամբ պատվով կկատարի վեցերորդ հնգամյակի հոյակապ խնդիրները, որով ավելի կհզորացվի մեր Հայրենիքը և կամրապնդվի խաղաղության գործն ամբողջ աշխարհում։

---

# ԺՈՂՈՎՐԴԻ ԿՅԱՆՔԻ ՆՅՈՒԹԱԿԱՆ ԵՎ ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ՄԱԿԱՐԴԱԿԻ ԲԱՐՁՐԱՑՈՒՄԸ ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

*Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը անդուլ հոգատարություն են ցուցաբերում ժողովրդի բարեկեցության նկատմամբ: Վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ պարտիայի 20-րդ համագումարի Դիրեկտիվների նախագծում, որը մշակված է ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի կողմից, նախատեսվում է զգալիորեն բարձրացնել աշխատավորների բարեկեցությունը և կուլտուրան: Դա իր վառ արտահայտությունն է գտնում այն բանում, որ վեցերորդ հնգամյակում ազգային եկամուտը (համադրելի գներով) բարձրանալու է մոտավորապես 60 տոկոսով: Դրա հիման վրա կապահովվի բանվորների ու ծառայողների եկամուտների և գյուղացիների եկամուտների հետագա աճը, զգալիորեն ավելանալու է բընակչության յուրաքանչյուր շնչին ընկնող պարենային և արդյունաբերական ապրանք-*



*ների արտադրությունը: Նախատեսվում է բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը միջին հաշվով բարձրացնել առնվազն 30 տոկոսով, իսկ կոլտնտեսականների դրամական և բնամթերային եկամուտները՝ առնվազն 40 տոկոսով: Դրա հետ միասին աճելու են սոցիալական ապահովության և սոցիալական ապահովագրության գծով կատարվող պետական ծախսերը: Եթե այդ նըպատակի համար կատարվող պետական ծախսերը և վճարումները 1955 թվականին կազմում էին 154 միլիարդ ռուբլի, ապա 1960 թվականին կազմելու են մոտավորապես 210 միլիարդ ռուբլի:*

*Վեցերորդ հնգամյակում մոտավորապես 50 տոկոսով ավելանալու է պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառությունը, ընդ որում մանրածախ ապրանքաշրջանառության ավելի մեծ աճ է նախատեսվում գյուղում: 1955 թվականի համեմատությամբ 1960 թվականին բնակչության համար կարևորագույն ապրանքների վաճառքը ավելանալու է մոտավորապես հետևյալ չափերով. մսամթերքներ՝ 85 տոկոսով, ձկնեղեն՝ 59 տոկոսով, կենդանական յուղ՝ 57 տոկոսով, կաթ և կաթնամթերքներ՝ 2,7 անգամ, պանիր՝ 2,4 անգամ, ձու՝ 2,6 ան-*

գամ, շաքար՝ 70 տոկոսով, բամբակյա գործվածքեղեն՝ 30 տոկոսով, բրդյա գործվածքեղեն՝ 2 անգամ, մետաքսյա գործվածքեղեն՝ 2 անգամ, վուշի գործվածքեղեն՝ 3,6 անգամ, պատրաստի հագուստեղեն՝ 67 տոկոսով, կաշվե-կոշկեղեն՝ 65 տոկոսով, կահույք՝ 2 անգամ, ժամացույցներ՝ 70 տոկոսով, հեծանիվներ՝ 46 տոկոսով, ռադիո-ընդունիչներ՝ 2,2 անգամ, տելեվիզորներ՝ 5 անգամ, տնային սառցարաններ՝ 4,7 անգամ, փոշեծծիչներ՝ 3,9 անգամ, լվացքի մեքենաներ՝ 6 անգամ։ Ընդլայնվում է նաև փայտանյութի և շինանյութերի վաճառքը բնակչությանը և կոլտնտեսականներին, ընդ որում ցեմենտի վաճառքն ավելանալու է 2,5 անգամ, շիֆերինը՝ 2,1 անգամ, փափուկ ծածկինը՝ 70 տոկոսով։ Աճող ապրանքաշրջանառության պահանջները ապահովելու և առևտրի կուլտուրան բարձրացնելու նպատակով նախատեսվում է զգալիորեն ընդարձակել խանութների, կրպակների և ճաշարանների ցանցը։

Պարտիայի 20-րդ համագումարի Դիրեկտիվների նախագծով նախատեսվում է լրջորեն բարելավել և զգալիորեն ընդլայնել բնակարանային շինարարությունը։ Նոր հնգամյակում բնակելի շենքերի շինարարությունը կատարվելու է չտեսնված չափերով։ Քաղաք-



ներում, բանվորական ավաններում և գյուղերում պետական միջոցների հաշվին վեցերորդ հնգամյակում նախատեսվում է կառուցել բնակելի տներ 205 միլիոն քառ. մետր ընդհանուր տարածությամբ, կամ 2 անգամ ավելի, քան հինգերորդ հնգամյակում։ Բանվորներին, ծառայողներին և կոլտնտեսականներին լայն աջակցություն է ցույց տրվելու իրենց անձնական խնայողությունների հաշվին և պետական ու կոլտնտեսային վարկի օգնությամբ բնակելի շենքեր կառուցելու ասպարեզում։ Այդ նպատակով ընդարձակվելու է ստանդարտ տների դետալների կոմպլեկտների, շինանյութերի և սարքավորման վաճառքը բնակչությանը։

Դիրեկտիվների նախագծում նախատեսվում է բարելավել քաղաքային բնակչության կոմունալ սպասարկումը, է՛լ ավելի զարգացնել ջրմուղային և կոյուղային, ջեռուցիչ և էլեկտրական ցանցերը, ինչպես նաև բարելավել բնակչության սպասարկումը քաղաքային տրանսպորտով, բաղնիքներով, լվացքատներով և այլն։ Զգալի միջոցառումներ են կիրառվելու քաղաքների բարեկարգման գծով։

Զարգացման լայն հեռանկարներ են բացվում գիտության և կուլտուրայի ասպարե-

*ցում։ Վեցերորդ հնգամյակում իրագործվելու է միջնակարգ կրթությունը քաղաքներում և գյուղական վայրերում, ավելացվելու է բարձրագույն և միջնակարգ կրթությամբ մասնագետների պատրաստումը ուսումնական հաստատություններում, ընդարձակվելու է երեկոյան և հեռակա կրթության ցանցը, բարձրացվելու է գիտության դերը տնտեսական և կուլտուրական շինարարության հասունացած պրոբլեմների լուծման գործում։ Նախատեսվում է հնգամյակի ընթացքում բարձրագույն և միջնակարգ կրթություն ունեցող մասնագետների թողարկումն ավելացնել մոտավորապես 1,5 անգամ, իսկ արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի և գյուղատնտեսության ճյուղերի համար պատրաստվող մասնագետների թիվը, հինգերորդ հնգամյակի համեմատությամբ, ավելացվելու է մոտավորապես 2 անգամ։*

*Հաշվի առնելով կինոյի, որպես առավել մասսայական արվեստի, նշանակությունը, Դիրեկտիվների նախագծում նախատեսվում է հնգամյակի վերջում ապահովել տարեկան առնվազն 120 լիամետրաժ ֆիլմերի թողարկումը։ Հնգամյակի ընթացքում երկրում կինոսարքավորումների ցանցը ավելանալու է 30 տոկոսով, կառուցվելու են կինոթատրոն-*



*ներ՝ 5.000 տեղի համար, կամ 4 անգամ ավելի, քան հինգերորդ հնգամյակում։*

*Նոր հնգամյակում խոշոր միջոցառումներ են իրագործվելու կուլտուր-լուսավորական հիմնարկների և ռադիոյի ցանցի հետագա ընդարձակման և նրանց գործունեության բարելավման ուղղությամբ, ինչպես նաև գրքերի հրատարակության գործի զարգացման և պոլիգրաֆիական բազայի ամրապնդման ուղղությամբ։*

*1960 թվականին տելեվիզիոն կայանների քանակը ավելացվելու և հասցվելու է առնվազն 75-ի։*

*Դիրեկտիվների նախագծում կարևոր խնդիրներ են նախատեսվում առողջապահության հետագա զարգացման, առողջապահական օրգանների պրոֆիլակտիկ գործունեության մակարդակի և բնակչության բժշկական սպասարկման կուլտուրայի բարձրացման ուղղությամբ։*

*1955 թվականի համեմատությամբ, 1960 թվականին նախատեսվում է հիվանդանոցային մահճակալների թիվն ավելացնել մոտավորապես 28 տոկոսով, մանկամսուրների տեղերի թիվը՝ 44 տոկոսով, մանկապարտեզների տեղերի թիվը՝ 45 տոկոսով, սանատո-*

րիաների տեղերի թիվը՝ 10 տոկոսով, հանգստյան տների տեղերի թիվը՝ 13 տոկոսով։

Նախատեսվում է վեցերորդ հնգամյակի տարիներին կառուցել հիվանդանոցներ, որոնց մահճակալների թիվը 2,3 անգամ ավելի է լինելու, քան հինգերորդ հնգամյակում, մանկամսուրներ՝ 2,4 անգամ ավելի և մանկապարտեզներ՝ 2,4 անգամ ավելի, քան հինգերորդ հնգամյակում։

Նախատեսվում է 1960 թվականին բժշկական արդյունաբերության արտադրանքի թողարկումը, 1955 թվականի համեմատությամբ, ավելացնել առնվազն 2 անգամ։

Դիրեկտիվների նախագծում նախատեսված է միութենական ռեսպուբլիկաների, այդ թվում նաև մեր ռեսպուբլիկայի բնակչության կուլտուր-կենցաղային պայմանների հետագա բարելավումը։

Ռեսպուբլիկայում բնակարանային շինարարության համար կատարվող հատկացումները ավելանալու են 3 անգամ, ջրմուղների և կոյուղիների շինարարության հատկացումները՝ 2 անգամ։

Հիվանդանոցների, մանկապարտեզների, մանկամսուրների և կուլտուր-կենցաղային մյուս հիմնարկների շինարարության համար կատարվող կապիտալ ներդրումները նոր



հնգամյակում ավելանալու են ավելի քան 2 անգամ։

Բնակչության կուլտուր-կենցաղային պայմանների հետագա բարելավման նպատակով վեցերորդ հնգամյակում նախատեսվում է ընդարձակել հիվանդանոցների, սանատորիաների, դպրոցների, գրադարանների և կուլտուր-լուսավորական մյուս հիմնարկների ցանցը։

Հնգամյակի ընթացքում հիվանդանոցային մահճակալների թիվը ավելացվելու է մոտավորապես 37 տոկոսով, մանկամսուրների տեղերի թիվը՝ 41 տոկոսով։

Վեցերորդ հնգամյակում նախատեսվում է դպրոցական շինարարությունը ռեսպուբլիկայի քաղաքներում և գյուղերում, անցած հնգամյակի համեմատությամբ, ավելացնել մոտավորապես 2 անգամ։

***

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿՊ 20-րդ համագումարի Դիրեկտիվների նախա-

գիծը մեր երկրի տնտեսական և կուլտուրական շինարարության մի հոյակապ ծրագիր է հանդիսանում։ Վեցերորդ հնգամյակի խնդիրների հաջող իրագործումը նոր խոշոր առաջընթաց քայլ կհանդիսանա սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման, ժողովրդական սպառման առարկաների առատություն ստեղծելու խնդրի լուծման, ՍՍՌՄ-ում կոմունիստական հասարակարգի կառուցման գործում։ 20-րդ համագումարի Դիրեկտիվների նախագիծը ամբողջ աշխարհի առջև նոր ուժով դրսևորում է Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության հետևողական խաղաղասիրական քաղաքականությունը։ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման նոր հնգամյա պլանի կատարումը մեծ ավանդ կհանդիսանա ամբողջ սոցիալիստական լագերի հետագա ամրապնդման գործում, կծառայի ամբողջ աշխարհում խաղաղության ամրապնդմանը։

---



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## (ՍՍՌՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՎԵՑԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԸ)

1. Արդյունաբերության նոր և հզոր վերելքը վեցերորդ հնգամյակում.

2. Մանր արդյունաբերության առավել զարգացումը նոր հնգամյակում.

3. Արտադրական պրոցեսների մեքենայացումն ու ավտոմատացումը նոր հնգամյակում.

4. Տեխնիկական անընդհատ պրոգրեսը և աշխատանքի արտադրողականության բարձրացումը նոր հնգամյակում.

5. Արտադրության մեջ գիտության և տեխնիկայի նորագույն նվաճումների արմատավորումը նոր հնգամյակում.

6. Էլեկտրիֆիկացման հզոր զարգացումը վեցերորդ հնգամյակում.

7. Գյուղատնտեսության շեշտակի վերելքը նոր հնգամյակում.

8. Հողագործության և անասնաբուծության մասնագիտացումն ըստ երկրի շրջանների.

9. Անասնաբուծության շեշտակի վերելքը նոր հնգամյակում.

10. Հողի բերքատվության և անասունների մթերատվության բարձրացումը նոր հնգամյակում.

11. Ագրոտեխնիկական գիտության և առաջավոր փորձի նվաճումների արմատավորումը գյուղատնտեսության մեջ.

12. Մեքենա-տրակտորային կայանների և սովխոզների ճազեցումը նորագույն տեխնիկայով.

13. Խամ ու խոպան հողերի յուրացումը և հացահատիկային տնտեսության հետագա վերելքը նոր հնգամյակում.

14. Ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացումը նոր հնգամյակում.

15. Նոր հնգամյակում բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ մեր երկիրը կրճատնի և կանցնի կապիտալիստական առավել զարգացած երկրներից.

16. Վեցերորդ հնգամյակի կարևորագույն խնդիրները տրանսպորտի և կապի զարգացման վերաբերյալ.

17. Կապիտալ շինարարությունը և շինարարության ինդուստրացումը նոր հնգամյակում.

18. Պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառության մեծացումը նոր հնգամյակում.



19. Գիտության և կուլտուրայի հետագա զարգացումը նոր հնգամյակում.

20. Ժողովրդական կրթության բուռն վերելքը նոր հնգամյակում.

21. Պարտիայի և կառավարության հոգատարությունը ժողովրդի առողջությունը պահպանելու վերաբերյալ.

22. Վեցերորդ հնգամյա պլանի իրականացումը ապահովում է ՍՍՌՄ տնտեսական հզորությունը և նրա անխորտակելի պաշտպանունակությունը.

23. Վեցերորդ հնգամյակում էլ ավելի են բարգավաճելու սովետական երկրի կուլտուրան և արվեստը.

24. Նոր հնգամյակում էլ ավելի կծաղկի ու կբարգավաճի մեր ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսությունը.

25. Աշխատանքային նոր հաջողություններով նշանավորենք պարտիայի 20-րդ համագումարը.

26. Վեցերորդ հնգամյակը խաղաղ շինարարության հնգամյակ է.

27. Վեցերորդ հնգամյակի կատարումը մեծագույն ավանդ է սոցիալիստական լագերի հետագա ամրապնդման գործում:

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՄԿՊ XX համագումարի Դիրեկտիվների նախագիծը ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի հունվարի 15, 16, 17 և 18-ի համարներում։*



Վեցերորդ հնգամյա պլանի նոյակապ խնդիրները. *«Պրավդա»-ի հունվարի 16-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի հունվարի 3-ի համարում։*

Ս. ԹՈՎՄԱՍՅԱՆ— Հայաստանի ԿԿ Կենտրոնական Կոմիտեի հաշվետվությունը ՀԿԿ 18-րդ համագումարին, *տպագրված «Ս. Հ.»-ի հունվարի 20-ի համարում։*

Ա. ՔՈՉԻՆՅԱՆ— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1956—1960 թվականների վեցերորդ հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ 20-րդ համագումարի Դիրեկտիվների նախագծի մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1956 թվականի հունվարի 22-ի համարում։*

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի երկրորդ սեսիայի նյութերը

---

СОДЕРЖАНИЕ

стр.



Ի. տ. խմբագրի՝ Վ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

Отдел Пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 3 1956 г.

ՎՖ 00518 Պատվեր 105 Տիրաժ 8350

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 50 կոպ.։